# «ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»Ը

**ՓԱՐԻԶԻ ՄԷՋ**

ԿԸ ՏՕՆՈՒԻ ՆՈՅԵՄԲԵՐ 1 ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅԵ ԺԱՄԸ 21էն ՄԻՆՉԵՒ ԱՌԱՒՕՏ ԵՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place Saint-Sulpice — Métro : St. Sulpice**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ Գ. ԲԱԼԱՅԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

*ԵՒ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿՈՂՄԷ ԸՆԿ. ԱՐԱ ՊԻՊԼՐԵԱՆ*

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ

Արտասանութիւն՝ ընկ. Տիկին ԱՆԱՀԻՏ ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ, երգ՝ Օրիորդներ ՄԱՐԳԱՐԻՏ եւ ԼՈՒԻԶ ՆԱՀԱՊԵՏԵԱՆ (*մեներգ եւ զուգերգ*) *Գաւիթէի ձայնասփիւռէն*, եւ ընկ. ԱՒԵՏԻՍ ՔԻՒՓԷԼԵԱՆ

Կովկասեան պարեր՝ Օրիորդ ԱՇԽԷՆ ԳԽԵԱՆ եւ ՎԻԳԷՆ ԹՈՐՈՍԵԱՆ: Հայկական երգերու երրեակ մը, ղեկավարութեամբ՝ Պ. ՔԱՋԵԱՆԻ:

*Մենախօսութիւն՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ*

## ԿԷՍ ԳԻՇԵՐԻՆ ԿԸ ՍԿՍԻՆ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐԸ

**Orchestre MIC GEET et sa formation**

1er Prix du Conservatoire de Paris

*ՃՈԽ ՊԻՒՖԷ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐՈՎ* — *Խօսնակ՝ ընկ. Գ. ԷՄՐԻՆԵԱՆ*

ՄՈՒՏՔ 300 ՖՐԱՆՔ

---

*Կ. ԽԱՉԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ՎԻԷՆ*

*Տեղի կ'ունենայ Նոյեմբեր 15ին, Սալ տը Ֆէթի սրահին մէջ, ժամը իննէն մինչեւ ուշ գիշեր: Առաջնակարգ նուագ (Լիոնէն), ճոխ պիւֆէ :*

*Մուտքը 300 ֆրանք :*

*ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ*

*Երկսեռ երիտասարդութեան համար Բարեգործականի գիշերային հայերէնի դասընթացքը վերսկսած է, տեղի կ'ունենայ ամէն Ուրբաթ, ժամը 19 – 22, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ :*

*Փափաքելի է որ երիտասարդութիւնը փութայ օգտուիլ սոյն պատեհութենէն :*

---

# Սիփան - Կոմիտաս Երգչախումբի

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՀԱՄԵՐԳԸ

Նուիրուած **ԳՈՒՐԳԷՆ Մ. ԱԼԷՄՇԱՀԻ**

Յիշատակին, իր մահուան 10րդ տարեդարձին առթիւ

**ԱՅՍ ԿԻՐԱԿԻ** ՆՈՅԵՄԲԵՐ 2ին, ԺԱՄԸ 15ին

**Salle Gaveau**

**Association des Concerts Chouteau**

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ ԵՒ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ (100 Մասնակցող)

Մեներգ՝ **ԱՍՏՂԻԿ ԱՌԱՔԵԼԵԱՆ**

Մ. ՊՕՂՈՍԵԱՆ, Ա. ՔԻՒՓԷԼԵԱՆ, Ա. ՍԵՐՈԲԵԱՆ

*ՅԱՅՏԱԳՐԻՆ ՄԷՋ՝ ԱՒԱՐԱՅՐԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ*

Ղեկավարութեամբ՝ **ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ**

*Տոմսերու համար դիմել՝ «Յառաջ»ին :*

---

**ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ**

*Վիէնի Յ.Կ.Խ. մասնաճիւղս ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհի Էլլէն Բիւզանդի եւ ընտանեկան պարագաներուն իրենց ամուսնոյն եւ հօր մահուան առթիւ:*

**ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ**

*Մարսէյլի Հ.Մ.Ը.Մ.ի տարեկան պարահանդէսը Նոյեմբեր 22ին, Շաբաթ իրիկուն Օ Կլիւպ:*

*Մանրամասնութիւնները՝ յաջորդով :*

*Անդաստան*

ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ

Թիւ 8 – 9

240 էջ, *ճոխ բովանդակութեամբ եւ նկարազարդ :*

1200 ֆրանք: Դիմել Պ. Բիւզանդ Թոփալեանի, 46 Րիւ Ռիշէ, Փարիզ (9):

---





---

*ՆՈՒԷՐ*

*Տիկին Տէօքմէճեան մեռելոցին առթիւ երկու հազար ֆրանք կը նուիրէ Ազգատախնամին: (Ստանալ Յառաջէն):*

**ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ**

*Այս Կիրակի, ժամը 10·30ին հոգեհանգստեան պաշտօն պիտի մատուցուի բազմավաստակ*

*ՂԵՒՈՆԴ Վ. ՔԻԼԷՐՃԵԱՆԻ*

*հոգւոյն համար Ս. Խաչ եկեղեցին, 10պիս* Րիւ Թուէն:

**ՑՈՒՇԱՏԵՏՐ**

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս երկուշաբթի իրիկուն, ժամը* 21ին, 17 Րիւ Պլէօ: *Կարեւոր օրակարգ:*





Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Պանեէօ – Բաչանի Ց. Կ. Խաչը շնոր – հակալութեամբ ստացած է հինգ հարիւր Ֆր. Այրի Տիկին Հ. Յարութիւնեանէ, փոխան ծաղկեպսակի ողբացեալ Ենովք Յարութիւնեանի մահուան առթիւ :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ց. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղի վար– չութիւնս շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Սուրէն, Համասփիւռ Սա – հակեանէ հազար Ֆրանք Ամենայն Սրբոց տօնի առիթով իրենց մշտակցութիւնը յայտնելով՝ Երիցուհի Արմենուհի Տէր Արսէնեանի դառնաղէտ մահուան առթիւ :

## ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՇՏՕՆ ԵՒ ԳԵՐԵԶՄԱՆ ԱՅՑ Հ. Յ. Դ. ՕՐՈՒԱՆ ԱՌԻԹՈՎ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինաս – եան ենթակոմիտէի նախաձեռնութեամբ այս կիրակի առաւօտ ժամը 10ին հոգե – հանգստեան պաշտօն պիտի կատարուի Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին, իր շրջանի մահացեալ բոլոր ընկերներուն համար : Պատարագէն վերջ այց՝ հետեւ– եալ ընկերներուն շիրիմներուն.—

Տոքթ. Քիւթիւճեան, Հմայեակ Ուզունեան, Լեւոն Նոտարեան, Ահարոն Պէռ – պէռեան, Յովհ. Պէռպէռեան, Օննիկ Գուրեան, Նազար Բապուճեան, Աւագ Կարապետեան, Տագէս Զապունեան, Բիւզանդ Գամեան, Յովհ. Աբգարեան, Վաղ. Ուրբաթեան, Մկրտիչ Կարապետեան, Պօղ. Պօղոսեան, Շաւարշ Տէր Պարսամ – եան (Նոր Սերնդական) :

Այս առթիւ կը հրաւիրուին ողբացեալ – ներուն յիշատակը յարգողները :

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Ֆէօանվիլիէի օգա– փոխութեան կայանի ընդարձակման ի նպաստ կը նուիրեն .—

Պ. Պետրոսեան հինգ հազար Ֆր., Տէր եւ Տիկին Տօղրամաճեան երկու հազար, Տօքթ. Ալպաճեան, Պ. Պ. Պայրամեան, Ա– տապաշեան հազարական ֆրանք :

Հայ Կարմիր Խաչի Անտէր հիւանդնե – րու ֆոնտին կը նուիրեն .—

Պ. Պ. Ալթունեան, Հայրապետեան, Հարութեան հազարական ֆրանք, Սըր – մաքէշեան հինգ հարիւր :

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes
Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի առաւօտ, ժամը 10.45ին : Կը խօսի Վեր. ՍԻՄԼԵԱՆ : Նիւթ՝ «Գնա եւ այլեւս մեղք մի գործեր» :





## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ – ՍԷՆ ԺԵՐՈՄ.— Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ երեկոյ, սո – վորական հաւաքատեղին : Կարեւոր օրա – կարգ :

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արդութեան» խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ :

ՓՈՐԹ Տ'ԻԹԱԼԻ.— Ց. Կ. Խաչի մաս– նաճիւղի անդամական ընդհ. ժողովը այս Շաբաթ, կէսօրէ վերջ ժամը 3ին, ժան – Թիյի հայկ. դպրոցին մէջ :

Ց. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 3.30ին, Քաֆէ Լը Րէժանի մէջ : Օրակարգ.— Պարահանդէսի կարգադրութիւններ : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ : Յանձնախում– բի ընկերուհիներու ներկայութիւնը ան – հրաժեշտ է :

ՄԱՐՍԷՅԼ.— Քղիի Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Ահարոնեան սրահը, 26 Րիւ տէ Քոնվալէսան : Օրակարգ.— Ամե– րիկայէն Կեղր. վարչութենէն կարեւոր շրջաբերականներու եւ նամակներու ընթեր– ցում եւ ընթացիկ հարցեր : Կը հրաւիր – ուին բոլոր հայրենակիցները : Միութեա– նըս հասցէն է՝ Թադէոս Գըլճեան, 18 րիւ Թիպանօ, Մարսէյլ :

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբս կը ծանուցանէ Լիոնահայոց ի գիտութիւն թէ Փրէֆէքթիւրի մասնաւոր արտօնու – թեամբ կազմակերպած է մեծ վիճակա – հանութիւն մը՝ նիւթ ունենալով կառք մը 4 ձի, հեռատեսիլի եւ ձայնասփիւռի գործիքներ : Մասնակցութիւն եր – կու հարիւր ֆրանք միայն, տոմ – սերը հրապարակ ելած են արդէն եւ սպառելու մօտ է, կ'արժէ չզրկուիլ բախ – տաւորուելու կարելիութենէն, նաեւ շի – նութեան գործին ուղղակի սատարած ըլ– լալու անխախտելի հոգեկան հաճոյ – քէն, վիճակահանութիւնը կը կատարուի Ազգ. Տան հանդիսասրահին մէջ, թուա – կանը պիտի յայտարարուի ժամանակին : Հաւանաբար տարեվերջէն առաջ :

ՇԻՆ. ՅԱՆՁՆ. ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սե – րունդի «Շ. Միսաքեան» խումբին կողմէ :

Նոյեմբեր 15ին, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ առաւօտ, Օթէլ տը լա Քը – րուա տ'Օր սրահին մէջ, Փլաս տը լա Ռէ– փիւպլիք :

Նուագախումբ՝ Լուլու Պլան է սա Ֆոր– մասիօն :

Գեղարուեստական խնամուած բաժին :

## ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

Փարիզահայ երգչախումբին կողմէ այս կիրակի, Ազգ. Տան մէջ, ժամը 16էն 22 :

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Շաւիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խումբին կողմէ այս կիրակի ժամը 16ին եկեղեցիին սրահը :

Կը հրաւիրուին բոլոր Նոր Սերնդական– ները :

## ԺՈՂՈՎ – ԹԷՅԱՍԵՂԱՆ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Կապ. Խաչի Թէյասե – ղան – ընդհ. ժողովը, այս Կիրակի, ժա– մը 16ին, դպրոցի սրահին մէջ :

Սիրով կը հրաւիրուին բոլոր ընկերու – հիներն ու նախկին սանուհիները, մտեր – միկ եւ հաճելի ժամանցի մը ընթացքին՝ կատարելու ազգային եւ ընկերային պար– տաւորութիւններ :

Կոլ պիտի խնդրէ Նախագահ Քոթիէն, որ նախագահէ սահմանադրական կոմիտէին:

Վարչապետ Տը Կոլ խորհրդակցութիւններ ունեցաւ Պատերազմական նախարար Գիյոմայի հետ, որմէ ետք յաջորդաբար ընդունեցաւ Տնտեսութեան նախարարը՝ [illegible]ուտրօ եւ Նախարար Անտրէ Պիւլոշը: Խորհրդակցութիւններուն ներկայ էր Զօր. Էլըր:

Միւս կողմէ, ինչպէս յայտարարուած էր, Զօր. Տը Կոլ սկսաւ իր խօսակցութիւնները՝ ափրիկեան կառավարութիւններու ղեկավարներուն հետ: Քոնէ եւ Արդուսիէ երկարօրէն խօսեցան Վարչապետին հետ, որմէ ետք Մարոքի ֆրանսական դեսպան Փարոտի ընդունուեցաւ Տը Կոլի կողմէ: Այս առիթով վճռուեցաւ հերքուին այն զրոյցները, որոնց համաձայն Փարոտի պիտի հրաժարէր դեսպանի իր պաշտօնէն:

× Պատերազմական նախարարութիւնը կը հաղորդէ թէ զինեալ ուժերու ընդհանուր հրամանատար՝ Զօր. Էլի, որ 1958 Դեկտեմբեր 17ին տարիքի բերումով հանգստեան պիտի կոչուէր, տարի մը եւս պիտի մնայ իր պաշտօնին գլուխ՝ վարչապետին եւ պատերազմական նախարարութեան որոշումով:

× Յառաջիկայ հինգշաբթի Իսի լէ Մուլինոյի մէջ ընկերվարականները պիտի ունենան արտակարգ համագումար մը, որուն մեծ կարեւորութիւն կ'ընծայուի՝ քաղաքական շրջանակներուն կողմէ: Օրակարգի վրայ՝ կացութեան քննութիւնը:

× Ալժերիոյ Ազատագր. Ճակատի Թունուզի դրասենեակը հրապարակեց «Առժամեայ կառավարութեան» մէկ զեկոյցը, որ կը յայտարարուի թէ յառաջիկայ շաբաթ ազատ պիտի արձակուի ֆրանսացի գերիներու երկրորդ խումբը՝ Ալժերիոյ Կարմիր Մահիկին կողմէ: Ֆրանսացիները պիտի յանձնուին Միջազգային Կարմիր Խաչի ներկայացուցիչներուն: Այս լուրը հաստատուեցաւ Մարոքի եւ Թունուզի մէջ միաժամանակ: Ինչպէս ծանօթ է Նոյեմբերի սկիզբը Քրիմ Պէլքասըմ գերմանական թերթի մը յայտարարած էր թէ «մօտ ատենէն խումբ մը ֆրանսացի գերիներ եւս պիտի արձակուին»: Այդ յայտարարութենէն ետք գինուորներու ընտանիքները նամակներ ստացան իրենց հարազատներէն:

× Ֆերհաթ Աբբաս, որ հինգշաբթի օր Տարիխ գացած էր, մեկնեցաւ Ժընեւ. ջերթ մաղթելու համար օդակայան գացած էին Սպանիոյ Մարոքի եւ Թունուզի դեսպանները:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԱՂՏԱՏԻ մէջ համայնավարները հրաւէր ցոյց մը ըրին՝ խորհրդային զինուորական պատուիրակութեան մը ժամանման առթիւ. տասը բարձրաստիճան զինուորականներէ կազմուած այս պատուիրակութիւնը հաստատուեցաւ Յուլիս 14ին սպաննուած Ֆէյսալ թագաւորին պալատը: Կը կարծուի թէ այս սպաները պիտի զբաղին իրաքեան բանակի կազմակերպութեամբ, քանի որ անոնք օգնութեան հրաւէրը ստացած են Պաղտատէն:

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ պիտի գումարուի համայնավար կուսակցութեան Կեդրոնական Կոմիտէի ժողովը, որուն օրակարգը գլխաւոր նիւթն է՝ հողային հարցը: Կը կարծուի թէ երկաթէ վարագոյրի համայնքներուն մէջ հողային ինքնավար կառավարութիւն մը պիտի հիմնուի. այս խնդիրը արծարծուած էր արդէն 1927 – 1928ին, եւ նոր հանրապետութեան համար նախատեսուած շրջանն է՝ Պիրօ-պիճան: Այս ձեւով Կրեմլին կ'ուզէ առաջքն առնել դէպի Իսրայէլ գաղթելու հրէական շարժումին:

ՄԱԿի քաղաքական յանձնախումբին մէջ Քոլոմպիա ծրագիր մը ներկայացուց Կիպրոսի հարցը լուծելու համար, առաջարկելով որ քննիչ յանձնախումբ մը կազմուի ուսումնասիրելու համար կղզիին կացութիւնը: Կիպրոսի հարցին քննութեան սկիզբէն ի վեր սա իսկ չորրորդ ծրագիրն է՝ որ կը յանձնուի:

ԱՐԱԲ. ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ տեղեկատուութեան նախարար Սաատ Աֆրա յայտարարեց թէ Արեւմտեաններէ կրնան ձեռնարկել Ասուանի ամբարտակի շինութեան երկրորդ մասին, քանի որ Խ. Միութիւնը նիւթական եւ մասնագիտական օժանդակութիւնը բերած է աշխատանքներու առաջին մասին համար:

ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Լիոնի Նոր Սերունդի «Միհրանիթօ» խումբի կողմէ:

Դեկտեմբեր 7, կիրակի կէսօրէ յետոյ, ժամը 3էն մինչեւ գիշերուան 10ը, Յոյներու սրահը (5 Րիւ Պոնըփուա):

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական եւ եւրոպական պարեր, առատ կերուխում եւ հաճելի անակնկալներ:

Կը հրաւիրուին բոլոր Լիոնահայերը անխտիր:

Այդ օրը բոլորդ Յոյներու սրահը քաջալերելու համար Նոր Սերունդը:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Փիլիպպոս Եսայեան եւ զաւակը, Սէմէրճեան, Եսայեան, Բալուեան, Թօփաքալեան, Գասպարեան, Գէօրգեան, Քիւփճեան, Արթինեան, Ժամկոչեան ընտանիքները եւ բոլոր ընտանեկան պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն Իսսի Թաղապետութեան, Օդային Նախարարութեան, Ալժերիոյ 2/2 զօրաբաժնին, Ֆրանսայի Նախկին Ռազմիկներու Միութեան, Հայ Նախկին Ռազմիկներու Միութեան, Հ.Մ.Ը.Մ.ին, Իսսի եւ Պանեէօյի Նոր Սերունդին եւ բոլոր անոնց որոնք մասնակցեցան իրենց մեծ սուգին՝

ՓԻԼԻՐ ԵՍԱՅԵԱՆԻ

զանազէտ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ Ալժերիոյ ճակատը, 22 տարեկանին:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Շքեղ պարահանդէս, կազմակերպուած Հայ Կամ. եւ Մարտիկներու Միութեան կողմէ, Յունուար 31ին, Շաբաթ երեկոյ: Վիէնի մէջ:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆



◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆







Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. Միութեան ներթական ժողովը այսօր կիրակի (Նոյեմբեր 30), ժամը 14·30ին, 17 րիւ Պլէօ:

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Պոմոնի մասնաճիւղի վարչութիւնս ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամուհիները այս Երկուշաբթի օրը, ժամը 3·30ին Սահակ Մեսրոպ դպրոց սրահին մէջ: Շատ կարեւոր հարցերու շուրջ խորհրդակցելու համար: Բոլոր անդամուհիներուն ներկայութիւնը խիստ կարեւոր է:

ԿԱՊ. ԽԱՉԻ Պուլ. Օտտոյի մասնաճիւղի վարչութիւնս ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները, այս Եւ-րեքշաբթի ժամը 3·30ին, ընկերուհի Գ. Արզումանեանի բնակարանը: Շատ կարեւոր օրակարգ:





